# Սովետական Հայաստան

Ռ. ՂԱՐԻԲՅԱՆ

Այսօր տոն է, ուրախ օր,
Տոնն է քո մեծ՝ ծննդյան,
Ցնծա՛ երկիր դու մեր նոր՝
Սովետական Հայաստան:

Քեզնով հպարտ, ամեն օր,
Հրաշագործ բյուր ձեռքեր
Կառուցում են նորանոր
Լույս դպրոցներ ու շենքեր:

Ինչե՜ր, ինչե՜ր չունես դու՝
Գործարաններ ու հանքեր,
Դաշտեր հարուստ, բերքատու,
Արծաթազօծ ջրանցքներ:

Երգէս, Լենգէս, Սևանգէս՝
Արևից էլ վառ, հզոր,
Ուժ ու թափ են տալիս մեզ,
Կյանքը դարձնում լուսավոր:

Դու ծնվեցիր աշխարհում
Թեժ մարտերում փրկարար,
Մեծ Լենինի նոր դարում
Կանաչեցիր, կյանք առար:

Ստալինյան կենսատու
Արևի տակ հավիտյան,
Մեր ձեռքերով ծաղկիր դու
Սովետական Հայաստան:



Նկ. Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ

Լենինի — Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ




№ 11
ՆՈՅԵՄԲԵՐ
1950 Թ.
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 22-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Միլիոնների սրտից բխած
Մեր սերը քեզ վառվռուն,
Ո՜վ առաջնորդ մեր փառապանծ,
Քեզ հազար կյանք ու գարուն:

Փառք քեզ հավերժ, ազատարար,
Անմար արև աշխարհի,
Փառք քեզ հզոր մեր զորավար,
Հարազատ հայր սիրելի:



# ԻՄ ՉՔՆԱՂ ԵՐԵՎԱՆԸ

*ՎԻԳԵՆ ԽԵՉՈՒՄՅԱՆ* — *Նկ. Կ. ՄԻՆԱՍՅԱՆԻ*

## ԱԼԲՈՄԸ

Շաբաթ օրը հայրիկը տուն եկավ գործարանից ու հետը մի գիրք բերեց: Ես մի քանի անգամ հարցրի, թե ի՞նչ գիրք էր նրա բերածը:

—Ի՛նչ անհամբերն ես,—բարկացավ մայրիկը:

— Ճաշից հետո ամեն ինչ կիմանաս, — ասաց հայրիկն ու ժպտաց:

Նա միշտ այդպես ժպտում է, երբ որևէ լավ բան է բերած լինում իր հետ: Դրա համար էլ ես շատ եմ սիրում իմ հայրիկին: Նրան բոլորն են սիրում, որովհետև նա գործարանում վաղուց կատարել է իր հնգամյա պլանը և աշխատում է 1960 թվականի հաշվին:

Երբ սեղանը վերջապես հավաքված էր, նա ձեռքն առավ բերած գիրքը և սկսեց թերթել: Դա նկարների մի ալբոմ էր: Չնայած ես եկող տարի եմ դպրոց գնալու, բայց իսկույն կարդացի ալբոմի վրա գրվածը՝ «Սովետական Հայաստանի մայրաքաղաք Երևանը 30 տարում»:

Ի՛նչ նկարներ ասես, որ չկային այդտեղ...

Մայրիկն ասում էր, թե դժվար է նույնիսկ հավատալ, որ փլատակների միջից, երեսուն տարում այսպիսի չքնաղ քաղաք է բարձրացել:

— Ինչո՞ւ ես զարմանում,—ծիծաղեց հայրիկը,—քեզ հետ միասին մենք քիչ բան չենք արել մեր Երևանը կառուցելու համար:

— Վա՜յ, սա ի՞նչ է,—բացագանչեցի ես և մատս դրեցի բացված էջի վրա:

«Աստաֆյան փողոց: Կոնկա»—գրված էր նկարի տակ: Մայրիկն ու հայրիկը բարձր ծիծաղում էին, իսկ ես նայում էի նկարին:

Միահարկ տներով լցված, ծուռ ու մուռ, նեղ ու քարքարոտ փողոցում, ռելսերի վրա կանգնած էր երկու նիհար ձի լծած մի կառք:

— Սա կոչվում էր կոնկա,—բացատրեց հայրիկը,—հին Երևանի ողորմելի տրանսպորտը:

Այդ երեկո ես տասն անգամ նայեցի ալբոմի բոլոր նկարները և չկարողացա ժամանակին քնել:

— Քնի՛ր, քնի՛ր,—ասաց հայրիկը.—առավոտյան շուտ պետք է արթնանալ: Գնալու ենք զբոսանքի:

### ԵՐԵՎԱՆԸ ՄՈՏ ԱՊԱԳԱՅՈՒՄ



## ՁԲՈՍՆՈՒՄ ԵՆՔ ՄԵՐ ՏԱՆ ՇՐՋԱԿԱՅՔՈՒՄ

Ես ապրում եմ նոր, լուսավոր ու մեծ բնակարանում: Մեր դռան վրա գրված է. «Ա. Ս. Սուրենյան»: Ես էլ եմ Սուրենյան, իսկ «Ա. Ս.»-ն հայրիկն է: Առաջ մենք հին տանն էինք ապրում: Հիմա ես հպարտությամբ ասում եմ բոլորին.

— Եկեք ինձ մոտ հյուր: Անա՝ մեր հասցեն՝ Միկոյանի պողոտա, տուն № 6, երրորդ նախամուտք, բնակարան 3. իսկույն կգտնեք:

Տարիներ առաջ մեր փողոցը գոյություն չուներ. ոչ էլ բարձրահարկ շենքերը կային, որոնք հիմա մեր պողոտան զարդարում են երկու կողմից: Հիշո՞ւմ եք, այդտեղ նեղ փողոցներ էին, որոնցով գնում էին շուկա: Ես հիմա կանգնում եմ փողոցի մի ծայրում և տեսնում եմ մյուսը՝ հեռո՜ւ-հեռո՜ւ: Մեր տան առջև կանգնում են տրամվայն ու տրոլեյբուսը:

Նախաճաշից հետո հայրիկի ու մայրիկի հետ տնից դուրս եկանք: Հայրիկն ասաց.

— Ավելի լավ է տաքսի մեքենայով շրջենք:

Մենք նստեցինք տաքսի, շարժվեցինք մեր փողոցով, թեքվեցինք աջ, հետո ձախ և սկսվեց Օրջոնիկիձեի պողոտան:

— Երեսուն տարի առաջ Ստալինյան ռայոնի տեղում ճահճուտներ և ամայի վայրեր էին, — պատմում էր հայրիկը: — Անա, նայեք այս հողե պատի մնացորդին: Սա պարսկական սարդարների բերդն էր: Իսկ հիմա՞...

Իմ հայրիկը շատ է սիրում այս թաղամասը: Դե, ինչպե՞ս չսիրել գործարանների անվերջանալի շարքերը, այս մեծ կորպուսները, որտեղից փողոց է հասնում հազարավոր մեքենաների հռնդյունը: Պարիսպների ետևում շատ ծառեր ու ծաղկանոցներ կան: Կարծես սրանք գործարանների բակեր չեն, այլ այգիներ ու պարտեզներ:

Ես ձայն չէի հանում: Միայն մտածում էի, որ երբ մեծանամ, կաշխատեմ այս գործարաններից մեկում:

## ԼԵՆԻՆԻ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄ

Վերադարձանք նոր փողոցներով և կանգ առանք Լենինի հրապարակում: Հայրիկը բաց արեց ալբոմը:

— Ախ, ի՞նչ կար առաջ Լենինի հրապարակի տեղում: Իրար գլխի թափված էին խղճուկ տնակները, արևելյան բաղնիքը, քաղաքային փոքրիկ ժամացույցը: Ինչպե՞ս չհիանայինք մեր գեղեցիկ, Լենինի հրապարակով: Ինչպե՞ս նորից ու նորից չնայեինք Լենինի քանդակազարդ, փայլուն գրանիտե պատվանդանի վրա կանգնած մեծ արձանին: Իսկ Կառավարական տո՞ւնը... Ես սիրում եմ մեկ առ մեկ նայել նրա բազմաթիվ քանդակներին, վարդագույն քարե նռերին, խաղողի ողկույզներին, հասկերի փնջերին, եղնիկներին:

Հայրիկն ասում էր, որ վերակառուցվող կուլտուրայի տունը շատ կգեղեցկացնի հրապարակը:

— Տեսնո՞ւմ եք, նույնիսկ շինարարական



Աբովյանի պուրակը

տախտակների տակից երևում է նրա վեհ տեսքը: Շենքի վերևում արձաններ են դրվելու, որոնցից մեկը լինելու է հայերեն տառերի ստեղծող Մեսրոպ Մաշտոցի, մյուսը՝ հայ նոր գրականության հիմնադիր Խաչատուր Աբովյանի արձանը: Հրապարակի ավազանի մասին էլ չեմ ասում:

Ավազանը կառուցվում է: Ալբոմում նկարված էին լույսերի հեղեղում ծիածանվող նրա բարձր շատրվանները, ջրի շուրջը՝ փռված մշտադալար ծառեր ու ծաղիկներ:

Հայրիկն ասաց, որ «Արարատ» տրեստի շենքի դիմաց Շահումյանի և Ամիրյանի փողոցների անկյունում եկող տարի կբարձրանա քաղաքի կենտրոնական հյուրանոցը:

Նրա դիմաց կլինի «Մամուլի տունը», իսկ փոստի շենքը նոր ձևի սյուներով ու ավելի շքեղ պատերով կզարդարվի:

Հետո ես իմացա, որ հրապարակում, ասֆալտի փոխարեն հատակը ծածկվելու է գունավոր մարմարով ու քարերով:

## ԴԵՊԻ ՍՏԱԼԻՆՅԱՆ ՊՈՂՈՏԱ

Մեքենան դանդաղ անցավ Ամիրյանի փողոցով: Ինչքա՜ն է նա լայնացել, փոխվել: Ինչպիսի՜ բազմահարկ շենքեր են կառուցվել այս մի տարում ստեղծված փողոցում: Այստեղ արդեն ավարտվում է այն դպրոցի շինարարությունը, որտեղ սովորելու եմ ես:

Հայրիկն ալբոմի մեջ դժվարությամբ էր գտնում այն փողոցները, որոնց փոխարինել էր Ստալինյան պողոտան: Մի՞թե առաջ այդքան մանր փողոցներ կային այս շքեղ պողոտայի տեղում: Հայրիկը պատմում էր, իսկ մենք նայում էինք մի ծայրով համարյա «Հաղթանակի» կամուրջին, մյուսով մինչև Քանաքեռի սարահարթը հասնող Ստալինյան պողոտային: Բնակելի տների առաջ, լայն մայթերի վրա երկարում են ծառերի շարքերն ու ծաղիկների թմբերը, մեր կողքով անկանգ սլանում են տրամվայները, տրոլեյբուսները և ավտոմեքենաները:

Մենք տեսանք ծածկված շուկան, որի մուտքը մի ահագին քանդակված կամար է: Տեսանք Ստալինյան պողոտայի և Կարմիր Բանակի փողոցի անկյունում կառուցվող յոթ հարկանի այն տունը, որտեղի բնակիչները լիֆտով պիտի բարձրանան ու իջնեն: Հայրիկը մեզ ցույց տվեց այն տեղը, ուր կառուցվելու է Սունդուկյանի անվան թատրոնի նոր շենքը:

— Սրանով համարյա ամբողջ պողոտան կառուցված ու ավարտված կլինի:

Այդ ժամանակ ես բարձրաձայն հայտարարեցի․

— Երբ մեծանամ ճարտարապետ եմ դառնալու: Ես միայն այսպիսի գեղեցիկ տներ կկառուցեմ: Հետո գուցե և երգեմ օպերայում: Ախր, շա՜տ լավն է մեր օպերայի փառահեղ շենքը:

Մեքենան կանգնեց Լենինի պողոտայի անկյունում և մենք ցած իջանք: Հայրիկը ցույց էր տալիս շրջապատը:

— Երեսուն տարի առաջ այստեղ վերջանում էր քաղաքը: Սրանից վերև սկսվում էին մանր-մունր այգիները, ինչպես հին գյուղ-



«Դինամոյի» ստադիոնը

բում՝ բաժանված իրարից հողե բարձր պատերով և ոլորուն, քարուքանդ արահետներով։ Իսկ հետո քաղաքը տարածվեց դեպի վեր։

— Ուրեմն շուտով Երևանում ոչ մի հին տնակ չի լինի,—ասաց մայրիկը։

— Եվ չի լինի։ 1960 թվականին բոլոր երևանցիները կբնակվեն միայն նոր շենքերում,—հայտնեց հայրիկը։

## ՔԱՂԱՔԸ ՏԱՐԱԾՎԵԼ Է

Մենք Բաղրամյանի փողոցում զբոսնեցինք ոտքով։ Այստեղ շատերն են սիրում զբոսնել և նայել առանձնատներին ու պարտեզներին, կենտկոմի սպիտակ ու գեղեցիկ շենքին։

Այդ ժամանակ հայրիկը ցույց տվեց մի տարածություն և ասաց, որ այդտեղ կառուցվելու է Գիտությունների ակադեմիայի շենքը։ Ալբոմում մենք տեսանք նրա նկարը։ Այդպիսի շենքում արժեր աշխատել։ Եթե ես ասեի, որ գիտնական կդառնամ, մայրիկը կարող էր ծիծաղել։ Բայց նա հարցրեց.

— Ինչո՞ւ ես լռել։

— Իսկ եթե ես...

— Ախ, գիտեմ. դու հիմա էլ ուզում ես գիտնական դառնալ։

Այդպես էլ իմ մասին ոչինչ չվճռվեց։

Քիչ հետո մենք կանգնած էինք Զանգու գետի բարձր ափին։ Նրա երկու ափերին բազմաթիվ շենքեր կային և վերևից նայելիս կարելի էր տեսնել ապագա փողոցների տեղը։ Ներքևում, ձորում սուլում էր մանկական երկաթուղու գնացքը։

Ի՞նչ ասեի ես։ Մի՞թե ավելի լավ չէր լինի մեքենավար դառնալ։ Ո՛չ, ավելի լավ է՝ անտառագետ-գյուղատնտես։ Այդ դեպքում ծառեր կտնկեի մեր դիմաց, չոր ու քարքարոտ Ծիծեռնակաբերդ սարի վրա։ Այնտեղ ինչ որ մարդիկ հենց դրանով էին զբաղված։ Այդ սարի վրա տարածվելու է քաղաքի ամենամեծ զբոսավայրերից մեկը։ Բայց հայրիկն ասում էր, որ մի երկու տարուց հետո, Զանգվի այս ափը կամուրջով կմիանա մյուս ափին և հնարավոր կլինի մտնել մի նոր, կանաչ այգի։

— Այն ժամանակ մենք չենք ասի Բերիայի ափան։ Նա կլինի քաղաքի ռայոններից մեկը։ Իսկ ինչքա՜ն գեղեցիկ կլինի այն կապուտակ լիճը, որ կգոյանա գետի առջև կառուցված պատնեշի պատճառով։ Կապուտակ լճում մենք և՛ կլողանանք, և՛ նավակ կնստենք։

## ԱՋԱ ԹԵ ԻՆՉ ՎՃՌԵՑԻ

Մենք նորից տաքսի նստեցինք։ Հայրիկն ասաց, թե գնում ենք Միկոյանի ռայոնով, Արաբկիրի միջով։ Քիչ հետո դուրս եկանք մի լայն ճանապարհ, որի աջ ու ձախ կողմերում նորից ճանապարհներ, փողոցներ և շատ նորակառույց տներ կային։

—Նայեցեք ձեր շուրջը,—ասաց հայրիկը։— Մի երկու տարի հետո ոչ ոք չի չոկի, թե որտեղ է վերջացել քաղաքը և որտեղ է եղել Քանաքեռը։ Սա ուղղակի Միկոյանի ռայոնն է։

Մենք սլանում էինք մի մեծ այգու լայն ծառուղիով և մոտենում մի ուրիշ հրաշալիքի։



Սարի վրա, քաղաքի բոլոր փողոցներից երևացող տուն-պատվանդանի վրա կանգնած էր Ստալին պապիկի բրոնզե արձանը։

Ստալին պապիկը կանգնած էր Գեներալիսիմուսի հագուստով։ Նա նայում էր փռված, անծայր, գեղեցիկ քաղաքին։ Հեռվում ծխում էին գործարանների ծխնելույզները, երևում էին հուլունքի շարի պես գնացքները, ձիգ և օղակաձև փողոցները։

— Ա՜խ, ինչքա՜ն շնորհակալ ենք մենք քեզնից, ինչքա՜ն շնորհակալ,— շշուկով ասում էր մայրիկը աչքը արձանից չկտրելով։

Այնքան գեղեցիկ էր մեր շուրջը փռված երեսուն տարեկան Երևանը, որ ես բացականչեցի.

— Ի՜նչ լավն ես դու, գեղեցիկ Երևան։

— Պիտի ասել՝ նոր Երևան,— ժպիտով ուղղեց մայրիկը։ Իսկ հայրիկն ասաց.

— Սոցիալիստական Երևան։ Սոցիալիստականը ամենից, ամենից գեղեցիկն է։ Եվ սոցիալիստական քաղաքն իրենց համար կառուցում են իրենք աշխատավորները։ Նրանք կառուցում են այնպես, որ աշխարհում ոչ մի ուրիշ տեղ կառուցած չլինեն ուրիշները։

Այդպես ապրել ու կառուցել սովորեցրել է Ստալին պապին։ Հիմա ես գիտեմ, ինչ էլ որ լինեմ, կլինեմ այնպիսին, որ Ստալին պապին գոհ լինի ինձնից։



Երևանի տեսքը Հաղթանակի մոնումենտի մոտից

ԳՐ. ՉԱԼԻԿՅԱՆ

# ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆ

Չի՛կ-չա՛կ, չի՛կ-չա՛կ, չի՛կ-չա՛կ,
Այսպես շարունակ,
Քարեր են տաշում,
Գեղեցիկ նախշում,
Կարմիր տուֆաքար,
Սպիտակ մարմար.
Մուրճերն են երգում
Իմ հայրենիքում,
Ու շենքեր են նոր
Ելնում ամեն օր։

Բո՛մ-բո՛ւմ, բո՛մ-բո՛ւմ, բո՛մ-բո՛ւմ,
Եվ Կորեայում
Շենքերի վրա
Անվերջ, անխնա,
Ռումբեր են նետում.
Նետում են, նետում,
Որ քանդեն միայն
Այդ ամերիկյան
Ֆաշիստները բութ,
Անհոգի, անգութ։
Բայց թանկ է հիմի,
Մարդկանց արյունը,
Խաղաղությունը։
Խաղաղությունը
Մեր կյանքն է, տունը,
Տենչը կառուցման,
Սերը մեր ուսման,
Մեր սիրտը, հոգին,
Հայրենիքն անգին։

Չի՛կ-չա՛կ, չի՛կ-չա՛կ, չի՛կ-չա՛կ,
Այսպես շարունակ
Մուրճերն են երգում
Իմ հայրենիքում,
Ու շենքեր են նոր
Ելնում ամեն օր։



Երևանը գիշերով



Ա. ԱՐԱՔՍՄԱՆ Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

1.

Նա հիմա հայտնի կոմպոզիտոր է։ Նրա ստեղծագործությունները լսում են բոլորը։

Արա Սիրունյանն այժմ քսանհինգ տարեկան է։

Ես ուզում եմ պատմել ձեզ, թե ինչպես նա հայտնի կոմպոզիտոր դարձավ…

Ծնվել է Արան գեղատեսիլ Լոռու հեռավոր գյուղերից մեկում։ Դեռ մանուկ էր նա, երեք-չորս տարեկան, բայց նրան գրավում էին բոլոր տեսակի ձայները։ Իրենց փոքրիկ տան պատշգամբում կանգնած կամ այգում նստած, լսում էր Արան գարնանային թռչունների անուշ ծլվլոցը, գառների մայունը, կովերի բառաչը, գետի շառաչը, անցնող սայլերի անիվների ճռինչը։

Արան առանձնապես սիրում էր սրնգի նվագը։

Լուսաբացին, կոլխոզի հովիվ Գիքոն, ոչխարի մեծ հոտն առաջը գցած անցնում էր գյուղի փողոցներով և նվագում էր իր սրինգը։ Արան, որ արդեն արթնացած էր լինում, ականջները սրած լսում էր սրնգի մեղմ ու





դուրեկան ելևէջները: Գիքոն Արային միշտ տեսնում էր պատշգամբում կանգնած, զմայլված հայացքով, ժպիտը դեմքին: Հովիվը մահակը բարձրացնելով ողջունում էր նրան:

— Բարի՜ լույս, Արայի՜կ...

Որոշ ժամանակից հետո Արան սկսեց սուլել բոլոր այն եղանակները, որ նվագում էր Գիքոն, և այնպես լավ էր սուլում, որ շուտով գյուղում սկսեցին խոսել նրա շնորհքի մասին:

2.

Երկու տարի հետո Արան պետք է ընդունվեր գյուղի դպրոցը:

Դպրոցի վարիչը Արայի ծնողներին խորհուրդ տվեց նրան սովորելու ուղարկել երաժշտական ուսումնարան:

Դժվար էր ծնողների համար բաժանվել իրենց միակ զավակից: Սրանից-նրանից խորհուրդ հարցրին, բայց բոլորն էլ նույնն էին ասում:

— Թողեք՝ գնա... Արան մեր գյուղի բլբուլն է դառնալու:

Ու Արայի համար բացվեց նոր կյանք:

Քաղաքի երաժշտական ուսումնարանում նա սկսեց ֆլեյտա նվագել սովորել: Բայց Արային գրավում էին երաժշտական բոլոր գործիքները: Շատ էր պատահում, որ Արան երկար կանգնում էր ուսումնարանի միջանցքում և լսում ջութակի, թավջութակի, փայտե ու փողային գործիքների և դաշնամուրի հնչյունները: Ու նա սկսեց տարբերել ամեն մի գործիքի առանձնահատուկ ձայնը, նրբությունները, ինչպես գյուղում՝ ծլվլացող թռչուններին:

Շուտով Արան սկսեց նվագել փայտե բոլոր մյուս գործիքների, իսկ ավելի ուշ՝ դաշնամուրի վրա:

Դաշնամո՜ւր...

Այդ մեծ գործիքը Արային թվում էր մի աշխարհ: Ինչքա՜ն հնչյուններ, ինչքա՜ն ձայներ ուներ դաշնամուրը: Նրա ձյունի նման սպիտակ ստեղներն ալեկոծվում, շառաչում էին ալիքների պես, մեղմ սվսվում՝ ինչպես բարդիները և խոխոջում՝ ինչպես իրենց գյուղի սառնորակ աղբյուրներն ու առվակները:

Ուսումնարանում Արան լավ աշակերտ էր, ուսուցիչների ու ընկերների սիրելին:

Եկավ ուսումնարանն ավարտելու օրը: Այդ ժամանակ Արան տասնչորս տարեկան էր: Նրա հայրն ու մայրն ուրախացան, որ իրենց որդուն գյուղ կտանեն: Ուսումնարանի դիրեկտորն ասաց.

— Արան տաղանդավոր տղա է: Նա այժմ պետք է գնա Երևան կրթությունը շարունակելու:

— Ի՞նչ ես ասում, ընկեր դիրեկ-

տոր,—բողոքեց Արայի հայրը,—տղա ենք մեծացրել, որ երեսը չտեսնե՞նք։

— Լա՛վ, չեմ ստիպում,—կարծես համաձայնվեց դիրեկտորը, բայց այսօր մեր ուսումնարանում ավարտական համերգ կա, խնդրում եմ՝ մնացեք...

Արայի ծնողներն ուրախությամբ մնացին։

3.

Ուսումնարանի դահլիճում ասեղ գցելու տեղ չկար։ Առաջին կարգերում տեղ էին գրավել մանկավարժները և ծնողները։ Արայի հայրն ու մայրը նստել էին հենց առաջին աթոռներին՝ բեմի մոտ։

Համերգը սկսվեց։ Շատ պատանիներ հանդես եկան։ Վերջապես հայտարարվեց Արա Սիրունյանի անունը։ Նա նվագելու էր իր ստեղծագործությունը։ Դահլիճը դղրդաց ծափահարություններից։

Նրա հայրն ու մայրն իրար նայեցին։ Մի՞թե իրենց որդուն են այդպես մեծարում։ Մի՞թե փոքրիկ Արայիկն է նստած մեծ դաշնամուրի առաջ։

Արան աչքի տակով փնտրում էր ծնողներին, բայց հուզմունքից կարծես ոչ ոքի չէր տեսնում։

Վերջապես դահլիճում տիրեց քար լռություն և Արայի մատները սահեցին դաշնամուրի ստեղների վրայով։ Նրա նվագած երգը ծանոթ երգ էր, շատ ծանոթ։ Այդ երգը Արան լսել էր գյուղում, դաշտերում, սարերում։ Այդ երգը հիշեցնում էր սրնգահար Գիքոյի նվագը, որ սուլում էր փոքրիկ Արան։ Որքա՜ն հարազատ, որքա՜ն գեղեցիկ էր այդ երգը։



Երբ Արան ավարտեց նվագը՝ դահլիճը նորից թնդաց ծափերից։ Այս անգամ ծափահարում էին նաև հայրն ու մայրը։

Համերգից հետո ուսումնարանի դիրեկտորը մոտեցավ Արա՛յի հորն ու մորը և հարցրեց.

— Հը՛, ինչպե՞ս է, հավանեցի՞ք, հիմա ի՞նչ կասեք։

— Ի՞նչ պիտի ասենք, շնորհակալ ենք,—շշնջացին նրանք, ապա հայրը ավելացրեց.—Թող գնա, թող մարդ դառնա... Ճիշտ է, որ մեր կյանքում ազնիվ քարը գետնի վրա չի մնա...

— Ա՛յ, դա ճիշտ է,—ուրախ ասաց դիրեկտորը։

4.

Անցավ դարձյալ չորս տարի։ Արա Սիրունյանը ավարտեց նաև Երևանի երաժշտական տեխնիկումը. ավարտեց որպես գերազանցիկ։

Տեխնիկումի ավարտական համերգին որպես հյուր ներկա էր մի նշանավոր ռուս կոմպոզիտոր։ Նա լսեց Արայիկի ստեղծագործությունները ու ասաց․

— Այդ տղան մեծ երաժիշտ կդառնա։

Եվ ռուս կոմպոզիտորի միջամտությամբ ու օգնությամբ Արա Սիրունյանը մեկնեց Մոսկվա, Չայկովսկու անվան Պետական կոնսերվատորիայում սովորելու։

5.

Անցան տարիներ։ Արա Սիրունյանը դարձավ հայտնի երաժիշտ։ Նա արդեն հանդես էր գալիս համերգային բոլոր դահլիճներում ու նրան ծափահարում էին շատ-շատերը։ Բայց Արային քաշում էր չքնաղ Լոռին։

Ու մի օր, նա իր երաժիշտ ընկերների հետ, գնաց հայրենի գյուղը։ Նրան դիմավորեցին ծերացած ծնողները, ծանոթներն ու բարեկամները։

Ահա այգին, առվակները, ահա այն սարը, որտեղ Արան լսում էր Գիքոյի սրնգի հրաշալի հնչյունները…

Գյուղի նորաշեն գեղեցիկ ակումբում Արան իր ընկերներով համերգ կազմակերպեց կոլխոզնիկների համար։

Գիքոն, որ այժմ կոլխոզի անասնապահական ֆերմայի վարիչն էր, նույնպես եկել էր համերգի։

Համերգի սկզբում երաժիշտները նվագեցին Արայի պոեմը, որ նա գրել էր իր մանկության մասին, Գիքոյի սրնգի, սարում անցկացրած երջանիկ րոպեների մասին, այն հրաշալի կյանքի մասին, որ իր նման բոլոր պատանիների համար ստեղծել են Լենինն ու Ստալինը։

Երբ համերգը վերջացավ, Գիքոն ուրախության արցունքներն աչքերին և մոռանալով, որ իր առաջ կանգնածը մի հասունացած երիտասարդ է, գոչեց․

— Արայիկ ջան, ես քո հոգուն մատաղ… մեզնից տարար մեր երգը ու մեզ վերադարձրիր… Զորանաս…

Արա Սիրունյանը ուրախ ժպտում էր հայրենակիցներին։ Նա հուզված էր, հպարտ ու երջանիկ…



## ԵՐԿԻՐԸ ՄԵՐ

Հ. ՀԱՑՐԱՊԵՏՅԱՆ

Ցավն էր պատել
Մեր աշխարհին,
Ամենուրեք
Վիշտ ու սով.
Նենգ դաշնակն էր
Տիրում երկրին,
Ժողովրդի
Վիշտը՝ ծով։

Ազատության
Երգը հնչեց
Լայնատարած
Հյուսիսից.
«Ելեք, ելեք,
Տանջված մարդիկ,
Ազատվեցեք
Կապանքից»։

Ելան բանվոր
Ու գյուղացի,
Վերջը տվին
Դաշնակի,
Ծագեց կարմիր
Արշալույսը,
Արշալույսը
Նոր կյանքի։

Երկիրը մեր
Մութ ու ավեր
Սոված, տանջված,
Որբացած,
Այնուհետև
Ծաղկեց, դարձավ
Սովետական
Հայաստան։




ՍԵՐՈ ԽԱՆԶԱԴՅԱՆ

Նկ. Տ. ԹՈՔՄԱՋՅԱՆԻ

Աշնան արևը նոր էր իր շողերով ողողել Զանգեզուրի լեռնաշղթայի գագաթները, երբ գյուղից դուրս եկան մի խումբ պիոներներ: Նրանք կոլտնտեսության նախագահ Սուրենի ուղեկցությամբ գնացին դեպի Ուշտափի սարահարթը: Պատանիները շրջապատել էին կոլխոզի նախագահին և իրար ընդհատելով, բազմաթիվ հարցեր էին տեղում նրա գլխին:

— Ընկե՛ր Սուրեն, քանի՞ կիլոմետր է մինչև Շաքարալիճը,—հարցնում էր մեկը:

— Ինչո՞ւ եք Շաքարալիճ ասում նրան,—հետաքրքրվում էր մյուսը:

— Ե՞րբ կհասնենք:

Նախագահը ժպտում էր:

— Դե, դուք համբերեցեք, ես մեկ-մեկ կպատմեմ ձեզ, մեր Շաքարալճի մասին, որը մեր կոլխոզի ամենալավ նվերն է Սովետական Հայաստանի երեսնամյակին,— ասաց Սուրենը:

— Ինչպե՞ս թե նվեր է: Ի՞նչ է, մինչև հիմա լիճը չի եղել,—զարմացած հարցրեց Արամը:

— Բանն էլ հենց այդ է: Շաքարալիճը ընդամենը մի տարեկան է,—պատասխանեց Սուրենը:

— Է՜... էլ ինչո՞ւ ենք գնում,—նրա թևի տակից պոկվելով և մի քիչ տխրելով, ասաց Ոսկեհատը:—Մի տարեկան լիճը ի՞նչ կլինի որ, մի կալի չափ: Մեր աշխարհագրության ուսուցիչն ասում է, որ Մեծ Իշխան սարի մոտ գտնվող Սև լիճը հարյուր հազար տարեկան է, իսկ դուք ահա, թե ինչ եք ասում՝ «Շաքարալիճը մի տարեկան է»:

Մյուս երեխաներից շատերն ափսոսացին, որ երկար ճանապարհ պիտի անցնեն՝ մի տարեկան լիճ տեսնելու համար:

Սուրենը նայելով սարն ի վեր ձգվող խնուղուն, հանդարտ ձայնով ասաց.

— Այն, ինչ բնությունը հարյուր հազար տարվա ընթացքում է ստեղծում, մեր մարդիկ, սովետական մարդիկ կարող են ստեղծել մեկ տարում: Ա՛յ, Ոսկեհատն ասում է, որ մեր սարերում գտնվող բնական Սև լիճը հարյուր հազար տարեկան է, բայց մեծ չէ իր ծավալով: Իսկ Շաքարալիճն արհեստական է, մեր ձեռքով ստեղծված և փոքր չէ Սև լճից: Շուտով մենք կհասնենք ու դուք կտեսնեք այն:

Քանի գնում ճանապարհը դժվարանում էր: Մասրենու տերևազուրկ թփերի վրա կարմիր մանյակների պես դեռ փայլում էին չրափված մասուրները: Մի թփի տակ քուչուչ էր անում կաքավների երամը: Քարերի, դեղնած խոտերի և հողակոշտերի մեջ նրանք հազիվ էին երևում: Ժիր մրջյունները ճանապարհին մնացած վերջին բարիքներն էին տանում դեպի իրենց բները: Վաղուց հնձած արտի մեջ, այստեղ-այնտեղ ծիլ էր գցել աշնանախոտը: Ոսկեկատար կկուն պոկում էր նրանց նուրբ ցողունն ու չորս կողմը նայելով, վախեցած թռչում դեպի ձորերը:



Վերջապես ճանապարհորդները հասան բարձունքին: Այդտեղից մինչև Որոտան գետի բարձր ժայռերը ձգվում էր Ուշտափի

սարահարթը, որի վրա փռված էին դեղնակարմիր գորգերի նմանող հնձած արտերը:

Արամը ամենից առաջ տեսավ Շաքարալիճն ու ձեռքը դեպի այն կողմը պարզած ճչաց.

— Հրե՛ն, հրե՛ն լիճը երևաց, տեսեք:

Բոլորը նայեցին նրա ցույց տված կողմը: Ուշտափի հարավային մասում փայլում էր կապուտակ ջրերի հսկայական տարածությունը: Ասես աշնանային ջինջ երկնքի մի պատառ պոկվել ու ընկել էր արտերի մեջ:

— Ի՜նչ լավ լիճ է,—չկարողանալով իր հիացմունքը թաքցնել, բացագանչեց Ոսկեհատը:

— Կարելի՞ է նրա մեջ լողանալ,—հարցրեց Արամը Սուրենին:

— Ինչո՞ւ չէ, կարելի է, բայց հիմա նրա ջուրը սառն է,—պատասխանեց Սուրենն ու



շարունակեց.—ահա և մեր առաջ փռված է Շաքարալիճը: Անցյալ տարի նրա տեղը մի քարքարոտ ու խոր փոս էր, որտեղ մասրենի անգամ չէր բուսնում: Այդ բնական փոսում անում էին փշախոտը, ուղտափուշը և ուրիշ վայրի խոտեր: Անցյալ տարի մենք որոշեցինք այդ մեծ փոսն օգտագործել: Այդ գործում մեզ օգնեցին գիտնականներն ու ինժեներները:

Նախագահը քայլում էր դեպի լիճն ու պատմում այն հերոսական աշխատանքների մասին, որ կատարել էին կոլխոզնիկները:

Ձմեռն Ուշտափի հյուսիսային մասի սարերը ծածկվում են ձյան հաստ շերտով: Գարնանը ձյունը հալվում է, սարերից հոսում ցած և թափվում Որոտան գետը: Այդ ձյունաջրից օգտվելու նպատակով Ուշտափի զանազան մասերից կոլխոզնիկները տասնյակ կիլոմետր երկարությամբ մի քանի առուներ են հանել, բերել մինչև բնական փոսը: Ձնաջուրը լցրել է փոսը ու առաջացրել Շաքարալիճը:

— Միայն ձնաջուրը չէ, որ թափվում է այստեղ,—պատմում էր Սուրենը,—ա՛յ, այն ձորով հոսում է Ջրոշըռ փոքրիկ գետակը, իսկ ձորից այն կողմը Ցուրտաղբյուրն է, նրա ջրերն էլ առուներով բերեցինք մինչև լիճը:

Վերջապես պիոներների խումբը հասավ լճակին: Կապույտ հայելու նման փռվել էր Շաքարալիճը: Վարդասարից փչող մեղմ քամին օրորում էր նրա մանր կոհակները: Ջրոշըռից ու Ցուրտաղբյուրից եկող ջրերն աղմուկով թափվում էին նրա մեջ:

Երեխաները ցնծության աղաղակներով ափ իջան ու բուռ-բուռ վերցնելով մաքուր ջուրը սկսեցին ցրել օդի մեջ, ուրախանալ:

Երբ նրանք հանդարտվեցին, նախագահն ասաց.

— Մեկ միլիոն խորանարդ մետր ջուր է տեղավորված 13 մետր խորություն ունեցող և 20 հեկտար տարածություն գրավող այս լճում: Այդ ջուրը կբավականացնի մոտ 500 հեկտար հող ոռոգելու համար:

—Ի՞նչ հողեր պիտի ոռոգեք և ի՞նչ պիտի անի այնտեղ,—հարցրին երեխաները նախագահին: Նախագահը շարունակեց.

— Ուշտափից ներքև, Վարարակն ու Որոտան գետերի լանջերը ամայի են, անապատ: Այնտեղ միայն մասրենու, բբխլուի ու կանգառի թփեր են անում, որոնց տակ վխտում են օձեր ու քարադողոշներ: Թռչուններն անգամ բույն չեն դնում այդ ամայի տեղերում: Մենք որոշել ենք գալիք գարնանը այդ անապատում տնկել խաղողի որթ, թզենի, սերկևիլ և ուրիշ մերձարևադարձային կուլտուրաներ:

— Շատ կհարստանա մեր կոլխոզը,—անհամբեր գոչեց Արամը:

— Նա՛տ,—հայացքը լճին հառած հավանություն տվեց Սուրենը,—այդ հաղթանակը մենք կուտակել ենք լճի մեջ: Գարնանը լճի հարավային ափին կկառուցենք 50—60 մետր երկարությամբ մի թունել և ջուրը կտանենք դեպի Ցաքուտը՝ մատղաշ տնկիները ջրելու:

— Մենք կօգնենք ձեզ, ընկեր Սուրեն,— ասաց Ոսկեհատն ու նայեց ընկերներին:

— Այո, այո, կօգնենք,—միահամուռ համաձայնվեցին պիոներները:

Սուրենը ժպտաց,

—Ապրեք,—ասաց նա:—Շաքարալիճը մեր ամենամեծ նվերն է Հայաստանի 30-ամյակին: Իսկ ձեր նվերն էլ այն կլինի, որ շաբաթօրյակներ կազմակերպեք Ցաքուտի լանջերը քարերից մաքրելու համար:

— Կանենք, կանենք,—խոստացան պատանիները:

— Բայց դուք չասացիք, թե ինչու լճի անունը Շաքարալին է,—հարցրեց Արամը:

—Այս ջրերը կանեցնեն շաքարահամ խաղող ու թուզ, մեղրածոր թութ ու հոն: Ահա թե ինչու մենք մեր նոր լճի անունը Շաքարալին ենք դրել,—պատասխանեց նախագահը:

Արևը մայր էր մտնում: Հովը փոխվեց քամու: Մի տարեկան լիճը սկսեց փոթորկվել:

# ՇԻՆԱՐԱՐ ՎԱՆԻԿԸ

ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ

Նկ. Գր. ԽԱՆՋՅԱՆԻ

Մեր տան դիմաց, փողոցում
Մի լավ շենք են կառուցում.

Նրա պատերը սիրուն
Վարպետ Ավոն է շարում:

Իսկ ես նրան միշտ օգնում,
Քար ու կիր եմ հասցնում:

Ահա պատը բարձրացել,
Բարձրացել, շենք է դարձել:

Կառուցել ենք շենքը, տե՛ս,
Վարպետ Ավոն, մեկ էլ ես...






# ԵՐԵՎԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՊԱԼԱՏՈՒՄ

*Ա. ՓԱՆՈՍՅԱՆ*
*(Պիոներների պալատի դիրեկտոր)*

*Լուսանկ. Վ. ՍԵՎՈՅԱՆԻ*

Այստեղ հնչում է դաշնամուրի ձայնը, այնտեղ վրձինը սահում է սպիտակ կտավի վրա: Արհեստանոցներում չխկչխկում են փոքրիկ մուրճերը. իսկ աղմուկից հեռու մի գեղեցիկ սրահում, մի խումբ պիոներներ բուռն հետաքրքրությամբ լսում են Օլեգ Կոշևոյի և Սերգեյ Տյուլենինի փառապանծ կյանքի պատմությունը...

Այս բոլորը մեր պալատում է՝ Պիոներների պալատում:

Ի՞նչ ասես որ չի կարելի սովորել մեր պալատում: Այստեղ կա հարյուր չորս ինքնագործ խմբակ՝ երգի, պարի, մոդելիստների, բնասերների, քանդակագործության, նկարչության, սպորտի... Մեզ մոտ ոչ ոք պարապ չի նստում. Յուրիկը կարդում է, Ռոզան՝ նկարում, Արամն ու Ռուբենը ցատկել են սովորում, իսկ դահլիճում թատերական խմբակը նոր պիես է փորձում:

Այսպես է մեզ մոտ:

Պալատի հիմնադրման օրից անցել է տասներեք տարի: Այդ տարիներին շատ ու շատ պիոներներ են հաճախել մեր ինքնագործ խմբակների պարապմունքները: Հենց այժմ մեզ մոտ սովորում և աշխատում են 1750 պիոներ ու դպրոցական: Իսկ ինչքա՞ն պիոներներ են եկել դիտելու մեր քանդակները, մոդելները, նկարները, ներկայացումները:

* * *

Մեր ռեսպուբլիկայի տասնյակ նշանավոր մարդիկ Պիոներների պալատի սաներն են եղել:

Հայտնի գիտնական Մերգելյանին, իհարկե, ճանաչում եք: Մի տաս տարի առաջ նա մեր քիմիայի խմբակի ակտիվ մասնակիցներից մեկն էր: Ֆրունզիկ Դովլաթյանը, Մետաքսյա Սիմոնյանը, որ հիմա Սունդուկյանի անվան պետական թատրոնի արտիստներ են, արժանացել են Ստալինյան մրցանակի լաուրեատի բարձր կոչմանը: Նրանք առաջին դերերը մեզ մոտ են խաղացել. իսկ Հրանտ Շահինյանը, միջազգային սպորտային մրցումների ժամանակ առաջնություն շահեց և միանգամից վեց պարգև ստացավ: Նա էլ սովորել է մեր սպորտ խմբակում: Գեղարվեստական ինստիտուտի շրջանավարտներ Ղուկաս Չուբարյանը, Սիլվա Մնացա-







կանյանը, Երեմ Վարդանյանը մեր քանդակագործների խմբակում են ծանոթացել կավի ու քանդակագործական մուրճիկի հետ: Հարցրեք, թե որտե՞ղ է առաջին նկույթն ունեցել Սպենդիարովի անվան թատրոնի բալետի սոլիստ Ազատ Ղարիբյանը...

Բայց, բոլորին չես կարող թվել:

* *

Այժմ էլ մեր պալատի խմբակներում հարյուրավոր շնորհալի պիոներներ կան: Նրանցից ամեն մեկն իր սիրած մասնագիտությունն է սովորում: Քանդակագործական խմբակի պիոներներ՝ էդիկ Աղայանի և Ալբերտ Լևոնյանի աշխատանքները հիացմունք են առաջացնում: Վերջերս նրանք քանդակել են մեծ Ստալինի և բանակի գեներալ Բաղրամյանի կիսանդրիները: Ծովային մոդելիստների խմբակի անդամներ Գրիգոր Պայլոզյանի, Էմիլ Կրիչչյանի առագաստանավերի և մոտորային նավերի մոդելները Մոսկվայում դպրոցական մոդելիստների Համամիութենական մրցությունում երկրորդ տեղը գրավեցին: Պայլոզյանն ու Կրիչչյանը պարգևատրվեցին նվերներով ու պատվոգրերով: Ոչ ոք չի կասկածում, որ պարի խմբակի սաներ՝ Վերգինե Բարայանը, Արտուշ Պողոսյանը, Ռոզա Մելոնյանը հրաշալի արտիստներ կդառնան, իսկ նկարչական խմբակից Գևորգյան Թելմանը, Ազիզյան Ռաֆիկը, Սահակյան Ալբերտը՝ շնորհալի նկարիչներ:

Սա դեռ բոլորը չէ: Մեր պալատն ունի բազմաթիվ գեղեցիկ ցուցասրահներ, հավաքույթների և խաղերի սենյակներ: Ամենից լուսավոր և գեղեցիկ սենյակներում ցուցադրված են Լենինի և Ստալինի ռևոլյուցիոն գործունեությունը պատկերող նկարներ, քանդակներ, փաստաթղթեր: Այստեղ գալիս են մեր մայրաքաղաքի և ռեսպուբլիկայի շրջանների պիոներական շատ ջոկատներ և ուսումնասիրում մեծ առաջնորդների կյանքը:

Մեր գրադարանում ութ հազար հինգ հարյուր գիրք կա: Հազարավոր պիոներներ օգտվում են այդ գրքերից: Վերջին երեք ամսում, օրինակ՝ Մկրտչյան Մարինեան, Սահակյան Վրեժը, Փանոսյան Լավրիկը, Մխոյան Դոնարան և ուրիշները քսանհինգից ավելի գիրք են կարդացել:

Մենք մի մեծ և գեղեցիկ դահլիճ ունենք: Այնտեղ կարելի է կինոնկար և ներկայացում դիտել, հրաշալի համերգ լսել: Հենց այս դահլիճում էլ հանդիպումներ ենք ունենում նշանավոր գրողների, գիտնականների, մանկավարժների, հերոս կոլխոզնիկների ու ստախանովական բանվորների հետ: Կոլխոզնիկները մեզ պատմում են, թե ինչպես են առատ բերք ստանում, գիտնականները իրենց գյուտերի ու հայտնագործությունների մասին են պատմում, բանվորներն իրենց աշխատանքի, իսկ գրողները մեզ համար բանաստեղծություններ ու պատմվածքներ են կարդում:

Պիոներների պալատի սաները հաճախ էքսկուրսիաներ են կատարում: Վերջերս մի խումբ պիոներներ հյուր գնացին Բաքվի պիոներներին: Նրանք Բաքվում այնքան շատ բան են տեսել, որ միանգամից հնարավոր չէ պատմել:

Այո՛, լավն է մեր Պիոներների պալատը: Այդ մեր կառավարության, մեր պարտիայի, մեր սիրելի հայր Ստալինի նվերն է Սովետական Հայաստանի պատանի կառուցողներին:





## ՀԱՅԱՍՏԱՆ

Սովետական Հայաստան,
Դու ապրում ես նոր դարում,
Եվ վառել ես անմար
Քո լույսերը շողշողուն:

Ես ապրում եմ մեծ սիրով
Քո նոր կյանքում, այս վսեմ,
Դու տալիս ես ինձ կորով,
Որ միշտ ուրախ երգ ասեմ:

Սիրում եմ քեզ ծաղկազարդ,
Արևավառ Հայաստան,
Մեծ Միության չքնաղ զարդ,
Իմ բանկագին օրրան:

ՌՈԲԵՐՏ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ
(№ 41 դպրոցի աշակերտ)



# ԵՐԵՎԱՆԻ ՄԱՀՈՒԴԸ

Բ. ՍՏԱՖՖԻ

Նկ. Գ. ՄԱԼԱՅԱՆԻ

Առավոտյան փոքրիկ Աշխենը, լսելով մոր ձայնը, արթնացավ։ Հայրն ու մայրը իր մասին էին խոսում։ Մայրը ասում էր.

— Աշխենի վերարկուն շատ լավն է։ Ես այսպիսի նուրբ մահուդ դեռ չէի տեսել։



— Իսկ դու գիտե՞ս, թե որտեղ են գործում այդ մահուդը, — հարցրեց հայրը։

— Հավանաբար Մոսկվայում, կամ Լենինգրադում,—պատասխանեց մայրը։

— Սխալվում ես, այդ նուրբ մահուդը գործում են Երևանի մահուդի ֆաբրիկայում,—ասաց հայրը և ավելացրեց,—այսօր ես գնալու եմ այդ ֆաբրիկան, կարևոր գործ ունեմ։

Այստեղ Աշխենը բաց արեց աչքերը և ասաց թախանձագին.

— Հայրիկ, ինձ էլ կտանե՞ս.

— Ո՞ւր։

— Այա, կտանե՞ս։

— Ախր, ո՞ւր է...

— Մահուդի ֆաբրիկա։

— Ինչո՞ւ։

— Ես ուզում եմ տեսնել, թե ինչպես են պատրաստում այն մահուդը, որից ինձ համար վերարկու են կարել։

Հայրը ժպտաց.

— Դե լավ, քեզ էլ կտանեմ, բայց խելոք պիտի մնաս և լավ միտդ պահես այն ամենը, ինչ կտեսնես մահուդի ֆաբրիկայում։

Մահուդի ֆաբրիկայի դիրեկտորը բարեկամաբար ընդունեց Աշխենի հորը, հետո շոյեց Աշխենի մազերը։

—Հետաքրքրվո՞ւմ ես,—հարցրեց նա։

— Այն էլ ինչպե՜ս,—պատասխանեց հայրը,—քանի ժամ ինձ հանգիստ չէր տալիս։ Վերջապես հիմա կարող ես տեսնել, ահա ֆաբրիկան։

Նրանք գրասենյակից դուրս եկան և մտան ֆաբրիկայի ընդարձակ բակը։ Հայրը շրջապատի կորպուսները ցույց տալով ասաց.

— Այս շենքերը տեսնո՞ւմ ես. սրանք կառուցվել են վերջերս։ Ընդամենը մի քանի տարի առաջ այս ֆաբրիկայի տեղն ամայի տարածություն էր։

— Ոչինչ չի՞ եղել։

— Ոչինչ։

— Իսկ այս շենքն ինչի՞ համար է։

Հայրը համբերատարությամբ պատասխանում էր նրա հարցերին.

— Սա նախապատրաստական ցեխն է։ Այստեղից է սկսվում բրդի մշակման պրոցեսը։ Տես, այս մեքենաները ինչպես են լվանում ու չորացնում

բուրդը։ Իսկ մյուսներն էլ արդեն գզում են։

Նրանք ուշադիր դիտելով մեքենաների աշխատանքը, առաջ էին գնում։

— Այստեղ բուրդը ժապավենի նման անց են կացնում սանրերի միջով, որպեսզի նրա թելիկները ուղղվեն և մանելը հեշտանա,—բացատրեց հայրը։

Աշխենը իր աչքերին ասես չէր հավատում։ Բուրդը բարակ, թափանցիկ ժապավենի ձև ստացած առվակի նման գնում էր մեկ մեքենայից մյուսը։

— Սա էլ մանարանն է,—ասաց հայրը, երբ մտան մի նոր, ընդարձակ և լուսավոր ցեխ։ Մի քանի շարք դրված երկար մեքենաների վրա պտտվում էին իլիկները և նրանց քաղցրահնչյուն բզզոցը տարածվում էր շուրջը։

— Այստեղ բուրդը թել է դառնում, թելից կազմվում է հենքը, որը փոխադրվում է գործվածքային ցեխը։ Այժմ գնանք այնտեղ։

Երբ նրանք մտան գործվածքային ցեխ, առաջին պահին Աշխենը ոչինչ չէր կարողանում լսել։ Հարյուրավոր գործող մեքենաներ զվարթ աղմկում էին, իսկ նրանց շուրջը պտտվում էին ջուլհակուհիները։

— Տեսնու՞մ ես այն աղջկան,—մեքենաների մեջ հպարտորեն շրջող աղջկան ցույց տալով խոսում էր հայրը,—նա կոմերիտուհի է։ Նրա անունը Էմմա է։ Նա ղեկավարում է գերազանց որակի բրիգադան։ Գիտե՞ս ինչ բան է գերազանց որակ։ Այդ նշանակում է, որ ինչ որ արտադրվում է այս բրիգադայում, առաջին տեսակի է, բարձր որակի։ Արդեն մի տարի է, որ նրա բրիգադում նույնիսկ մեկ մետր խոտան կտորեղեն չի գործված։ Այս գործարանում 35 այդպեսի բրիգադա կա։

Աշխենը մոտեցավ հերոսուհի ջուլհակուհուն, ուշադիր հետևեց նրա շարժումներին։ Ջուլհակուհին ժպտաց նրան։

— Ինչպե՞ս ես սովորում,—հարցրեց նա։

— Գերազանց,—պատասխանեց Աշխենը։

— Ապրես, ես էլ գերազանց եմ աշխատում։ Արի իրար խոսք տանք միշտ գերազանց մնալու։

— Ես խոստանում եմ,—շշնջաց Աշխենը։

Գործվածքային ցեխում Աշխենը և նրա հայրը տեսան այն նուրբ մահուդը, որը վաճառվում էր Ունիվերմագում։

Այդտեղ սկսեց բացատրություններ տալ նաև դիրեկտորը, որը նրա հորն ուղեկցում էր։

— Մեր գործարանի մահուդը ուղարկվում է Բաքու, Բաթումի, Արխանգելսկ, Մուրմանսկ, Կույբիշև, Սարատով, Ստալինգրադ, Վլադիվոս-



տով, Լենինգրադ, Կրասնոդար,— բացատրեց գործարանի դիրեկտորը,— մենք Երևանի մանուկն ուղարկում ենք Սովետական Միության 38 քաղաքներ։

Աշխենը լսելով դիրեկտորի ասածը, մտովի պատկերացնում էր այդ 38 քաղաքների երեխաներին, որոնք հագնում են Երևանի մանուկից կարված վերարկուներ։

— Ահա թե ինչպիսին է Երևանի մանուկի ֆաբրիկան,— շշնջաց նա, երբ նոր հետ դուրս եկան գործարանի բակից։



# ԱՌԱՋԻՆ ԱՆԳԱՄ

ՎԼԱԴԻՄԻՐ ՆԱՐՈԺՆՈՎ

Նկ. Պ. ՄԱԼԱՅԱՆԻ

Երբ պիոներ կոչվեցի
　　　　　　　　ես,
Կարմիր փողկապ
　　　տվեցին ինձ,
Եվ նույն պահին
　　　թվաց այնպես,
Որ մեծացա
　　　　միանգամից։

Իմ սրտում՝ նոր
　　　հույզերի գետ,
Այդ օրը ես ուշ քնեցի,
Եվ առաջին անգամ
　　　　　ինձ հետ
Հայրս խոսեց որպես
　　　　　　մեծի։

Թարգմ. Ա. ԱԼԻՔՅԱՆ





# ՀԵՐՈՍՆԵՐԻ ՀԻՇԱՏԱԿԻՆ

Ա. ԿԱՆԱՅԱՆ
*(ճարտարապետ)*

Նկ. Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ

Երևանի մանկական երկաթուղու հրապարակներից մեկում իրար կողքի կանգնած են նորակառույց տասը աղբյուր. դրանք և՛ աղբյուրներ են, և՛ հուշարձաններ:

Այդ աղբյուր-հուշարձաններից ամեն մեկը նվիրված է Հայրենական մեծ պատերազմի մի հերոսի հիշատակին: Ձեզ ծանոթ են այդ հերոսների անունները. Օլեգ Կոշևոյ, Հունան Ավետիսյան, Ալեքսանդր Մատրոսով, Սերգեյ Օհանյան, Զոյա Կոսմոդեմյանսկայա և էլի մի քանի ուրիշ անուններ, որոնք զարդարում են աղբյուրներից ամեն մեկի ճակատը:

Այդ հուշարձանները հայ և ռուս ժողովուրդների սիրո ու եղբայրության արտահայտությունն են: Նրանք կառուցված են տարբեր գույնի քարերով. կարծես տարբեր հագուստներ հագա՚ եղբայրներ լինեն:

Աղբյուր-հուշարձ աններ կան ոչ միայն այստեղ, այլև Հայս ստանի բոլոր շրջաններում: Շատ գյուղերում և շրջանային կենտրոններում, ճանապարհների վրա և պուրակներում կտեսնեք գեղեցիկ քարերից կառուցված աղբյուրներ: Այդ աղբյուրների ճակատին դուք կկարդաք՝ «Հայրենական պատերազմի Հերոսներին» խոսքերը, որ սիրով փորագրել են կառուցող վարպետները:

Բայց այդ ո՞վ է որոշել միշտ բխող աղբյուրներով հիշել հերոսներին: Որոշել են Հայաստանի կոլխոզնիկները:

Նրանք 1943 թվի սկզբներին գյուղերում սկսեցին կառուցել այդ հուշարձանները, որոնք միշտ թարմ կպահեն Հայրենական պատերազմի հերոսների հիշատակը: Որոշվեց նաև, որ հուշարձանները աղբյուրներ են լինելու և խմելու ջուր են տալու բնակչությանը, անցորդներին, ճանապարհորդներին:

Աղբյուր-հուշարձանները քարից կառուցված ճարտարապետական գեղեցիկ շինություններ են: Նրանք պատրաստված են մեծ խնամքով, սրբատաշ բազալտից ու տուֆից: Շատ աղբյուրներ զարդարված են սյուներով ու քանդակներով: Նրանք հանգստանալու համար քարե նստարաններ էլ ունեն:

Գեղեցիկ են Թալինի, Արտաշատի, Ապարանի, Ստեփանավանի և մի շարք այլ տեղերի աղբյուրները:

Այդ աղբյուրները նախագծելու ու կառուցելու գործին մասնակցել են մի շարք հայտնի ճարտարապետներ:

Այսպես, գիշեր ու ցերեկ, տարին բոլոր,





խոխոջում է այդ աղբյուրների վճիտ ջուրը:

Եվ ամեն մեկը, ով ջուր կվերցնի կամ կխմի այդ աղբյուրներից, կկարդա նրանց պատին գրած խոսքերը, միշտ կհիշի պանծալի հերոսներին, որոնք իրենց կրծքով պաշտպանեցին մեր սիրելի Հայրենիքի ազատությունը և երջանկություն բերեցին մեր մանուկներին, ծերերին, ամբողջ ժողովրդին:



# Մեր ճամփորդը

(Հին բոլշևիկի հիշողություններից)

Խ. ԳՑՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

1.

1920 թվականին մի ղեկավար ընկերոջ հանձնարարությամբ Լոռու սարերի վրայով պետք է Թբիլիսի գնայի։

— Քեզ ուղեկից կտան, — ասաց այդ ընկերը։

Երեկոյան ուղեկցի հետ դուրս եկանք Ստեփանավանից, որ այն ժամանակ Ջալալօղլի էր կոչվում։ Մինչև կես գիշեր

գնում էինք ձորերով ու կածաններով։ Բարակ անձրև էր մաղում։ Դուրս եկանք մի հարթավայր։ Ուղեկիցս կանգնեց ու ձեռքով մի հեռավոր կրակ ցույց տալով ասաց.

— Կբարձրանաք այն սարը, այն փոքրիկ խարույկի մոտ ծանոթ մարդիկ են ձեզ սպասում։

Հետո նա մանրամասն բացատրեց, թե ինչպես ավելի հեշտ ու անվտանգ կլինի գնալը և հրաժեշտ տվեց։ Նրա պարտականությունն ինձ մինչև այստեղ բերելն էր։

Ճանապարհ ընկա։ Քանի գնաց ճանապարհն այնքան դժվարացավ, երբեմն պետք էր լինում մագլցել լերկ ժայռերի վրա։ Շուտով թփեր հանդիպեցին, իսկ քիչ հետո սկսվեց անտառը։ Խարույկի կրակն այլևս չէր երևում, բայց ուղղությունը մոտավորապես գիտեի։

Վերջապես անտառը վերջացավ. սկսվեց մի մեծ բացատ, որ տարածված էր մինչև սարի գագաթը։ Խարույկը նորից երևաց, այս անգամ ավելի պայծառ։ Ես քայլերս ուղղեցի դեպի այն կողմը։

Փոքրիկ խարույկը վառվում էր ուղիղ սարի գագաթին։ Նրանից այն կողմը նորից սկսվում էր մութ անտառը, որ շարունակվում էր լեռան հակառակ լանջին։

Ես զգուշությամբ մոտեցա խարույկին և պահվեցի նրանից քսան քայլ հեռու։ Խա-



րույկի մոտ պառկած էին երեք մարդ․ նրանցից մեկը խոմփում էր, իսկ երկուսը, երևում էր՝ քնած չէին։

Դուրս եկա թաքստոցից և իսկույն հիասթափվեցի. խարույկի մոտ պառկածները երեխաներ էին։

— Բարև տղերք,— ասացի ես։

Արթունները, որ ինձ նկատել էին, նըստեցին։

— Բարև։

— Այստեղ ի՞նչ եք անում։

— Ձուկ ենք որսում,— ծիծաղելով ասաց փոքրը։

— Կարելի՞ է տաքանալ։

— Կարելի է։

Նստեցի խարույկի մոտ և տաքանալով սկսեցի մտածել հետագա անելիքներիս մասին։ Գնալով ավելի էի համոզվում, որ մթան մեջ մոլորվելով ուրիշ խարույկի մոտ եմ ընկել։

— Քեռի,— հանկարծ հարցրեց փոքրը,— դու ի՞նչ մարդ ես։

— Լավ մարդ եմ,— կատակեցի ես։

— Իսկ այստեղ ի՞նչ ես անում։

— Ձուկ եմ որսում,— պատասխանեցի իր բառերով։

Ծիծաղեցին։

Տղան դարձավ դեպի անտառը և գոռաց.

— Հո՜յ, հո՜յ...

— Հո՜յ...— պատասխանեցին անտառից։

Ես զգուշացա. կանգնեցի։ Քիչ հետո երևացին երեք զինված մարդ։ Ձեռքս տարա դեպի գրպանս, որտեղ ատրճանակն էր։

— Միշա՜կ,— հանկարծ լսեցի անունս և եկողների մեջ ճանաչեցի Շալվային։ Դեռ 1905 թվականին մենք Թբիլիսիում միասին աշխատել էինք բոլշևիկյան ընդհատակում։

Նստեցինք խարույկի մոտ։

— Կհանգստանանք ու ճանապարհ կընկնենք,— ասաց Շալվան,— անտառում ձիերը մեզ են սպասում։

— Ովքե՞ր են այս տղաները,— հարցրի ես։

— Լավ տղաներ են, մեր կապավորներն են,— բացատրեց նա։

2.

Երկրորդ անգամ այն փոքրիկ տղային հանդիպեցի մի քանի ամիս հետո, Թբիլիսիում։

Մենշևիկները գտել էին մեր հետքերը։ Մեր գաղտնի տպարաններից մեկը հայտնաբերված էր։ Ընկերներից մի քանիսը բանտարկված էին, փնտրում էին նաև ինձ, Շալվային և մի քանի ուրիշ տղաների։

Ես ու մի ընկեր պահված էինք մի վրացի հացագործի նկուղում։ Հացագործը մեր մարդն էր, սակայն մեր թաքստոցը վտանգավոր էր, բակում ժանդարմ էր ապրում։

— Ձեզ մոտ կապավոր կգա,— ասաց տանտերը,— նա կհաղորդի կենտրոնի որոշումը ձեր հետագա անելիքների մասին։

Մենք սրտատրոփ սպասում էինք կապավորին։

Մի առավոտ ես մոտեցա նկուղի պատուհանին և զգուշությամբ սկսեցի դեպի բակը նայել։ Հանկարծ նկատեցի ծանոթ երեխային, որ բակում անիվ էր գլորում։ Նա իր անիվին հետևելով եկավ, կանգնեց պատուհանի մոտ և շշնջաց.



— Դուռը բաց արեք.— և անհայտացավ։

Հինգ րոպե անց նա գաղտագողի մտավ նկուղ։

— Տանտիրոջ վրա արդեն կասկածում են։ Այս գիշեր երևի այստեղ խուզարկություն լինի։ Ցերեկով հնարավոր չէ որևէ բան անել։ Սպասեցեք՝ երեկոյան 9-ին ես ձեզ կտանեմ ուր հարկն է,— մեծավարի ասաց նա և արագ դուրս թռավ նկուղից։

Երեկոյան նա իսկապես եկավ։ Մենք աննկատ դուրս եկանք բակի հետնամասի դռնից, իսկ մյուս դռնից արդեն մտնում էին ժանդարմները։

3.

Սովետական Ադրբեջանից կարմիր զորամասը մտավ Հայաստան։ Ես աշխատում էի այդ զորամասի շտաբում։ Դաշնակները կատաղի դիմադրություն էին ցույց տալիս, բայց ամենուրեք ջարդվում էին ու ետ քշվում։ Հայաստանի շրջանների մեծ մասը մեր ձեռքին էր։



Մի՛ կռվի մեջ իմ կապավորն սպանվեց․ ես դիվիզիայի շտաբից նոր կապավոր խնդրեցի։

Երեկոյան նստել էի խրճիթում սեղանի առաջ և օրվա զեկուցագիրն էի գրում։ Խրճիթ մտավ մի կարճահասակ մարտիկ։ Մթան մեջ ես չէի տեսնում նրա դեմքը։ Միայն երևում էր ճակատի սպիտակ վիրակապը և հրացանի սվինը։

— Ի՞նչ եք ուզում,— հարցրի ես։

— Ընկեր հրամանատար, դիվիզիայի շտաբի պետի կարգադրությամբ կապավոր Մինասյանը ներկայանում է ձեզ։

Մանկական ձայնից ճանաչեցի։

— Ձկնո՞րս...

— Ճիշտ այդպես,— ծիծաղելով հաստատեց նա։

4.

Կռիվը վերջացավ ու մենք բաժանվեցինք։ Կապավորիս Երևան ուղարկեցին սովորելու, իսկ ես զորամասի հետ գնացի Վաղարշապատ։ Տարիներ անցան։ Կամաց-կամաց մոռացա «Ձկնորսին»։ Այժմ ես գնդի հրամանատար էի՝ թաղված հազար ու մի անհետաձգելի գործերի մեջ։

Զորամասի ակումբում մարտիկների համար գիտական զեկուցում էր լինելու։ Ես ավտոմեքենա էի ուղարկել Երևան և երեկոյան սպասում էի գիտնականին։

— Ասում են շատ խելոք տղա է,— ասաց շտաբի պետը։

— Ես նրան լսել եմ, հրաշալի է խոսում,— հաստատեց հրամանատարներից մեկը։

Մինչ մենք զրուցում էինք, ավտոմեքենան կանգնեց շտաբի առաջ։ Դուրս եկանք գիտնականին դիմավորելու։ Մեքենայից ելած երիտասարդը ժպտալով մոտեցավ մեզ։ Այդ երիտասարդ գիտնականը իմ «Ձկնորսն» էր, որ տասներկու տարեկան հասակից ծառայում էր ռևոլյուցիայի մեծ գործին։

XXX ՏԱՐԻ

# ԱՐԱՐԱՏՅԱՆ ԴԱՇՏԸ

*ԱՐԱՄ ՕՀԱՆՅԱՆ*

*Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ*

*Գեղեցիկ է Արարատյան դաշտը։ Նրա մի կողմում բարձրանում է ձյունազարդ Արարատը, մյուս կողմում քառագագաթ Արագածը։ Այդ երկու հսկաների միջև տարածվում է բարակ մշուշով պատած Արարատյան դաշտը՝ Հայաստանի ամենամեծ և ամենահարուստ հարթությունը։ Նրա երկարությունը Ախուրյան գետից մինչև Մեղրու կիրճը 200 կիլոմետր է, իսկ լայնությունը՝ 30—40 կիլոմետր։ Արագածի լանջերից և Գեղամա լեռներից սկիզբ են առնում Քասախ, Ազատ, Վեդի, Զանգու գետերը և ոռոգում արևավառ Արարատյան դաշտը։ Բայց այդ դաշտերին կյանք տվողը Արաքս գետն է։*

*Պղտոր Արաքսը, սրընթաց իջնելով Բյուրակնյան լեռներից, հանդարտ մտնում է Արարատյան դաշտը, ջուր է տալիս նրան և շարունակում իր ճամփան դեպի Կասպից ծովը։*

*Արարատյան դաշտը հին պատմություն ունի։ Այստեղ են եղել հին Հայաստանի գլխավոր քաղաքները՝ Արտաշատը, Արմավիրը, Դվինը, Վաղարշապատը։ Անցել են դարեր և դարերի հետ Արարատյան դաշտավայրն էլ իր տեսքը փոխել է։*

*Հայաստանում Սովետական իշխանության հաստատվելուց առաջ այլ տեսարան էր ներկայացնում Արարատյան դաշտը։ Այդտեղ ջրի պակասությունից հողը չորանում էր, ճաքճքում, բույսերը խանձվում էին։ Հրաշալի դաշտը կիսաանապատի տեսք ուներ։ Միայն տեղ-տեղ, ուր հողերը ջրվում էին, օազիսների պես երևում էին գյուղերը։ Այդ գյուղերում հողի, ջրի, բերքի տերը կուլակներն էին կամ կալվածատերերը։ Խեղճ գյուղացին մշակում էր հողը, բերքի մեծ մասը տալիս հողատիրոջը, իսկ ինքը դատարկ նստում։ Բայց 30 տարի սրանից առաջ հողի և ջրի տերը դարձան աշխատավորները։ Նրանք Լենինի—Ստալինի ղեկավարությամբ ստեղծեցին նոր, սոցիալիստական տնտեսություն։*

*Այժմ Արաքսի ձախ ափին, Արարատյան դաշտում, կանաչ ծովի պես փռված են մրգաշատ այգիներն ու բամբակի դաշտերը։ Բազմաթիվ ջրանցքներ ոռոգում են կոլխոզային հողերը։ Այստեղ ու այնտեղ մեղմ օրորվում են սլացիկ բարդիները, որոնց բարձր կատարներին միշտ էլ բույն են դնում սպիտակ արագիլները։ Դաշտավայրում փռված են ծաղկող գյուղերն ու ավանները։ Գործարանների ծխնելույզներից գիշեր ու ցերեկ բարձրանում են ծխի քուլաները։ Ասֆալտապատ խճուղիներով անընդհատ սլանում են բեռնատար ու*

XXX ՏԱՐԻ



մարդատար ավտոմեքենաները։ Լսվում է մեքենաների հնչյունը, շոգեքարշերի սուլոցը։ Ամեն տեղ եռում է կյանքը։ Արարատյան դաշտում աշխատում են հարյուրավոր տրակտորներ, կոմբայններ, շարքացան ու բամբակահավաք մեքենաներ։

Երբ սկսվում է Արարատյան դաշտի ոսկե աշունը՝ բամբակենին բացում է իր փարթամ, սպիտակ քուլաները, ոսկեհատ խաղողը շողշողում է վազի վրա, դեղձենու ճյուղերը կոտրվում են հյութալի դեղձի բերքի ծանրության տակ, իսկ խնձորենին տարածում է իր անուշ բուրմունքը։

Աշնանը կոլխոզային բրիգադաներն ու օղակները դուրս են գալիս բերքահավաքի։ Եռում է աշխատանքը, հնչում է ուրախ երգը։ Կոլխոզնիկները մրցում են միմյանց հետ։ Ամեն մեկն աշխատում է ավելի բարձր բերք ստանալ, աշխատանքի հերոսի կոչման արժանանալ։

Բերքահավաքից հետո, երբ մտնում ես կոլխոզնիկի մառանը՝ ինչ ասես, որ այնտեղ չես գտնի։ Կարասներով գինի, տակառներով օղի, չամիչ, ընկույզ, փշատ, ռուջուխ, ալանի և ուրիշ շատ բարիքներ։

Հարուստ բերքի մի մասը վերամշակվում է Արարատյան դաշտի գործարաններում։ Քանի՜-քանի՜ տեսակ խմիչք են պատրաստում Էջմիածնի, Արտաշատի, Վեդու գործարանները։ Հոկտեմբերյանի կոնսերվի գործարանը տալիս է՝ դեղձի, ծիրանի, խաղողի, սալի, վարդի և ուրիշ շատ մուրաբաներ ու կոմպոտներ։ Խորգենու գործարանը արտադրում է խորգենու յուղ՝ հոտավետ օճառներ, դուխի, օդեկոլոն պատրաստելու համար... Արտաշատի բամբակազտիչ գործարանը զտում է բամբակը և ուղարկում տեքստիլ գործարանները՝ կտորեղեն պատրաստելու համար։ Բերիայի մետաքսի գործարանները տալիս են մետաքսյա նուրբ գործվածքներ։ Արարատի ցեմենտի գործարանը խոշոր կառուցումների համար ցեմենտ է արտադրում։

Արարատյան դաշտում ստեղծվել են նոր ավաններ՝ Դավիթաշեն, Անաստասավան, Սպանդարյան, Հաղթանակ, Սուրենավան, Բերիայի ավան... Էջմիածինը, Հոկտեմբերյանը, Արտաշատը դարձել են սոցիալիստական բարեկարգ քաղաքներ՝ ասֆալտապատ փողոցներով, բազմահարկ տներով։ Այդ բոլոր տեղերում շողշողում են Իլյիչի պայծառ լամպերը։

Արարատյան դաշտի գյուղերում ամենուրեք կտեսնեք ակումբներ, կինոներ, թատրոններ, մանկապարտեզներ, դպրոցներ, գրադարաններ, իսկ շատ կոլխոզնիկների տներում՝ հեռախոս, ռադիոընդունիչներ։

Արարատյան դաշտը 30 տարում այսպես ծաղկեց շնորհիվ Լենինի—Ստալինի պարտիայի իմաստուն ղեկավարության և ընկեր Ստալինի հոգատարության։

Արարատյան դաշտի ապագան ավելի չքնաղ ու պայծառ կլինի։



# ՀՐԱՇԱԼԻ ՄԵՔԵՆԱՆ

Դ. ԳԱԶԱԶՅԱՆ

Նկ. Պ. ՄԱԼԱՅԱՆԻ

Մենք անհամբեր սպասում էինք բամբակի բերքահավաքին։ Վարպետ Բագրատը խոստացել էր մեզ դաշտ տանել և մասնակից դարձնել այդ աշխատանքին։

Մի օր էլ վարպետ Բագրատն ասաց.

— Եկեք ձեզ տանեմ բամբակահավաքի։

Մենք բոլորս շատ ուրախացանք և վարպետի հետ ճանապարհ ընկանք դեպի դաշտ։



— Ես էլ եմ բամբակ հավաքելու,— ասաց Աշոտիկը։

— Ես էլ։

— Ես էլ։

Ձայն տվին մյուսները։

Վարպետ Բագրատը ծիծաղեց։

— Իսկ դուք գիտե՞ք, որ մենք բամբակը հավաքելու ենք ոչ թե ձեռքով, այլ բամբակահավաք մեքենայով.— բացատրեց նա։ —Հայաստանում մենք այս տարի առաջին անգամ գործադրեցինք բամբակահավաք մեքենան, որը ստեղծել են սովետական գիտնականները։ Այս մեքենան արտադրվում է Տաշքենդում և մի քանի տասնյակ անգամ հեշտացնում է մարդու աշխատանքը. նա մի անգամից բամբակն անջատում է կնգուղից և իր պահեստում կուտակում։

Երբ մենք տեղ հասանք, տեսանք, որ դաշտի եզրին կանգնած է մի մեքենա։ Դա բամբակ հավաքող մեքենան էր։ Մենք հավաքվեցինք նրա շուրջը և հետաքրքրությամբ սկսեցինք դիտել նրա առանձին մասերը։

— Տրակտորի նման է,— բացականչեց Աշոտիկը։

— Այո,— պատասխանեց վարպետ Բագրատը,— սա սովետական Ունիվերսալ տրակտորն է, որի վրա զանազան հարմարանք-

ներ դնելով գիտնականները վերակառուցել են և բամբակ հավաքող մեքենա դարձրել։

— Բայց ինչպե՞ս է նա բամբակը հավաքում,— ասաց անհանգիստ և հարցասեր Հակոբիկը։

— Այ, այսպես,— սկսեց բացատրել վարպետը,— տրակտորի առևի մասում, չորս ուղղահայաց թմբուկ է ամրացված։ Դրանց վրա դրված են գլանաձև սանրիկներ։ Հենց որ տրակտորը սկսում է աշխատել, թմբուկները պտտվում են միմյանց հակառակ ուղղությամբ և բամբակի տունկն իրենց մեջ առնելով կնգուղից զգուշությամբ դուրս են քաշում բամբակը։

Այս ասելով վարպետ Բագրատը գործարկեց տրակտորի շարժիչը։ Սկսեցին պտտվել թմբուկներն ու սանրիկները. նրանք կարծես որոնում էին կնգուղները, որ բամբակը նրանց միջից քաղեն։

— Իսկ հավաքված բամբակը որտե՞ղ է լցվում.— այս անգամ հարցրի ես։

— Սանրիկին կից ամրացված են այս խողանակները,— ցույց տվեց ընկեր Բագրատը,— սրանք սանրիկների վրայից խլում են բամբակը և գցում են թմբուկների ներքևում գտնվող փոքրիկ բաքի մեջ, իսկ այնտեղից, օդի ուժով բամբակը լայն խողովակներով գնում կուտակվում է մեքենայի ձախ կողմի վերևում տեղավորված բունկերում, որը ծառայում է որպես ժամանակավոր պահեստ։

— Ի՜նչ հետաքրքիր մեքենա է,— գոչեցինք մենք միաբերան։

— Ինչքա՜ն էլ գեղեցիկ է,— ավելացրեց Աշոտիկը։

Մի քանի րոպե հետո վարպետ Բագրատը գործարկեց բամբակահավաքը։ Մեքենան սկսեց աշխատել։

Արարատյան բամբակի ձյունափայլ դաշտերում հանդարտ առաջ էր շարժվում բամբակահավաք մեքենան և զգույշ հավաքում բամբակի փարթամ քուլաները։

Կոլխոզնիկների երջանկությանը չափ ու սահման չկար. նրանք վազում էին հրաշալի մեքենայի առևից և հրճվում նրա աշխատանքով։

Գյուղի ամենածեր կոլխոզնիկը՝ 90-ամյա Սերոբ ամին, զարմացած նայելով մեքենային ասում էր.

— Ա՛յ, թե ինչ է նշանակում Սովետական իշխանությո՜ւն... Հիմա կարելի է հարյուր տարի էլ ապրել...

Մենք ամբողջ օրը մնացինք դաշտում։ Մանրամասն ծանոթացանք բամբակահավաք մեքենայի աշխատանքին և օգնեցինք կոլխոզնիկներին։

— Ի՜նչ լավ է կյանքը կոլխոզում,— ասացի ես Վաչիկին, երբ երեկոյան տուն էինք վերադառնում։






Գ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

Այն տեղը, որտեղից դիտում և ուսումնասիրում են երկնային մարմինները՝ արևը, լուսինը և աստղերը կոչվում է աստղադիտարան։

1932 թվին Երևանում կառուցվեց Հայաստանի առաջին աստղադիտարանը։ Այն ժամանակ աստղադիտարանը շրջապատված էր խիտ այգիներով, այնպես, որ գիշերը մութն էր լինում և շատ հարմար էր այդտեղից դիտումներ կատարել։

Անցել են տարիներ։ Փոխվել է Երևան քաղաքի տեսքը, սակս փոխվել է նաև երկինքը։ Քաղաքի լույսերը, գործարանների ծուխը անտեսանելի են դարձրել թույլ պայծառություն ունեցող աստղերը։

— Այստեղ աստղագիտական խոշոր աշխատանք չի կարելի ծավալել, — ասաց հայտնի գիտնական Վիկտոր Համբարձումյանը։ Պետք է կառուցել նոր աստղադիտարան։

Եվ ահա, Հայրենական Մեծ պատերազմից անմիջապես հետո, 1945 թվին, Աշտարակի շրջանի Բյուրական գյուղում սկսվեց նոր աստղադիտարանի շինարարությունը։ Արագած լեռան դեղատեսիլ լանջին կառուցվում է մի աստղագիտական քաղաք։ Իրար հետևից բարձրանում են սրբատաշ քարերով կառուցված մեկ, երկու և երեք հարկանի գեղեցիկ շենքեր։

Բյուրականը 500 մետր Երևանից ավելի բարձր է։ Այստեղից երկինքը շատ պարզ է երևում։ Մենք կարողանում ենք տեսնել անգամ ամենաթույլ պայծառություն ունեցող աստղերը։

Աստղադիտարանում անընդհատ ստացվում են աստագիտական նոր գործիքներ։ Այստեղ արդեն գործի են դրվել սովետական գործարաններում պատրաստված, աշխարհում ամենախոշոր նեբյուլար սպեկտոգրաֆը և այլ գործիքներ։

Աստղադիտարանի շինարարությունը բուռն թափով շարունակվում է։ Չնայած դրան, մեր նոր աստղադիտարանն այժմ հայտնի է դարձել ամբողջ աշխարհում։ Այստեղ գիտական աշխատանքները սկսվել են շինարարության հետ միաժամանակ։ Սովետական Միության անվանի գիտնական, աստղադիտարանի դիրեկտոր Վիկտոր Համբարձումյանը իր վերջին հայտնագործումները արել է Բյուրականում։ 1947—1948 թվերին նա աստղային նոր սիստեմներ գտավ։ Այդ սիստեմները նա անվանեց աստղասփյուռներ (ասոցիացիաներ)։ Գիտնականը ցույց տվեց, որ ինչպես պարտեզում աճում են ծառերն ու ծաղիկները, այնպես էլ աստղասփյուռներում այժմ, մեր աչքի առաջ առաջանում ու ձևավորվում են աստղերը։ Այդպիսով, ընկեր Համբարձումյանը հերքեց բուրժուական այն բոլոր գիտնականների ասածները, որոնք կարծում էին, որ այժմ աստղ չի առաջանում, այլ նրանք առաջացել են միայն շատ և շատ առաջ։

Սովետական կառավարությունը բարձր գնահատեց ընկեր Համբարձումյանի այդ նոր աշխատանքը։ Նա և իր աշակերտը՝ աստղադիտարանի գիտական աշխատող Բենիամին Մարգարյանը, արժանացան Ստալինյան մրցանակի լաուրեատի բարձր կոչմանը։

Անվանի գիտնականի ղեկավարությամբ, Բյուրականի աստղադիտարանը շուտով կդառնա աշխարհի աստղագիտական լավագույն և մեծ քաղաքներից մեկը։



# ԴՊՐՈՑԱԿԱՆԻ ԵՐԳ

Խոսք՝ ՍԱՐՄԵՆԻ

Երաժշտությունը՝ Վ. ՏԻԳՐԱՆՑԱՆԻ

Moderato

f

mf

cresc

dim.

Սո-վե-տա-կան մեծ աշ-խար-հի զա-վակ-ներն ենք եր-ջա-նիկ,

1.

Ծաղ-կեց-նա-վոր մեր պան-ծա-լի Հը-զոր, ա-զատ Հայ-րե-նիք:

cresc.

## ԴՊՐՈՑԱԿԱՆԻ ԵՐԳԸ

Սովետական մեծ աշխարհի
Զավակներն ենք երջանիկ.
Ծաղկիր հավետ, մեր պանծալի, }*
Հզոր, ազատ Հայրենիք:

Կրկներգ.

Լինենք հաղթող, լինենք արի,
Սովորենք միշտ գերազանց,
Որ մոր նման մեզ միշտ սիրի
Մեր երկիրը փառապանծ:

Դպրոցական ենք դեռ այսօր,
Իսկ վաղը՝ քաջ մարտիկներ,
Զվարթ, ուրախ, գիշեր ու զոր, }*
Հնչում է գիլ երգը մեր:
Կրկներգ...

Սովորելով ենք միշտ հաղթում
Դժվար ճամփան գիտության,
Նայում է մեզ, ուրախ ժպտում }*
Շքեղ, պայծառ ապագան:
Կրկներգ...

Սիրում ենք մեր գրքերն անգին,
Դպրոցը մեր լուսատու,
Որտեղ կոփում է մեր հոգին }*
Սրտանց սիրած դասատուն:
Կրկներգ...

Ստալինյան արևն է վառ
Լուսավորում մեր ուղին,
Հայրենիքում մեր ծաղկավառ }*
Սիրում են միշտ հաղթողին:
Կրկներգ...

* Այս տողերը կրկնել:




„ПИОНЕР"
№ 11
ЖУРНАЛ ДЛЯ ПИОНЕРОВ И ШКОЛЬНИКОВ
Орган ЦК ЛКСМ Армении
Год издания 22-ой, ноябрь, 1950 г. Ереван

Պատ. խմբագիր՝ ԳԱՐ. ՍԵՎՈՒՆՑ

Խմբագրական կոլեգիա՝ ՍԻՄԱԿ, Հ. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ, Ա. ՄՈՎՍԻՍՅԱՆ, Մ. ԴԱՎԹՅԱՆ, Ս. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ, Մ. ՀԱՅԿԱԶՈՒՆԻ, Է. ԻՍԱԲԵԿՅԱՆ, Ս. ՕՀԱՆՅԱՆ

Շապիկը նկ. Գր. ԽԱՆՋՅԱՆԻ

Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 1, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06

ՎՖ 06467. Պատվեր 746 Տիրաժ 5000. Տպագրական 2 1/4 մամուլ, Հեղինակային 2 մամուլ. 1 մամուլում 45.200 տպ. նիշ. Արտադրության է հանձնված 23/X-50 թ.: Ստորագրված է տպագրության 24/XI-50 թ.:

Հայպոլիգրաֆհրատվարչության № 1 տպարան, Երևան, Ալավերդյան փ. № 65, 1950 թ.:

ԳԻՆԸ 2 Ռ.



# ԼԱՎ ԳԻՐՔԸ

Վ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

Լուսանկար ՆԵՄՐՈՒԹԻ

— Սուրի՛կ, մոտիկ արի՝ տես,
Թե ի՜նչ լավ գիրք ունեմ ես,
Իմ հայրիկն է բերել ինձ
Մեր «Հայգրքի» խանութից:

Մեկ թերթում են, մեկ կարդում,
Մեկ նայում են ու ժպտում.
Մնացել են հիացած
Սիրուն գիրքը բաց արած: